# le grand Tcharentz

par
Luc-André MARCEL

Tcharentz vécut la révolution d'Octobre. Il y crut. Il y participa de toutes ses forces, par les armes et la plume. Ce fut d'abord, pour lui, une histoire d'amour. Il s'y lança librement — si librement, par malheur, qu'il finit par être accusé de déviationnisme lors de la « grande purge » et jeté en prison, où il mourut. C'est qu'il se battit moins sous la tutelle de Lénine qu'à ses côtés. Il était moins l'homme d'un dogme que d'une libre recherche, plus un poète d'action que le servant d'une théorie. Et le poète ne fait très bien que ce qu'il aime et ce qu'il veut. Tcharentz fut un poète révolutionnaire par fonction naturelle. — C'est ce qui assure l'authenticité de son œuvre — Et ce qu'il annonçait était avant tout l'avènement du triomphe de l'homme contre tout arbitraire destructeur. Cela pouvait être peu, cela devint vite beaucoup trop.

Tcharentz — ce qui signifie le Mauvais, pseudonyme qu'il tint à prendre pour bien marquer qu'il était avant tout celui qui s'oppose à toute espèce de pharisaïsme — étonne par l'accumulation de contrastes, si tendus et si incompatibles entr'eux quelquefois qu'il paraît toujours au bord de l'explosion ou de l'écartèlement. Il est tout à la fois un condottière du communisme, un prophète sans Dieu mais non sans révélations, le plus familier des hommes de la rue, un amateur de drogues et d'excitants et un vieux sage oriental qui garderait toujours un pistolet dans sa poche. Il n'est dupe de rien, mais il espère tout. Il réussit la gageure d'être le plus logicien des poètes de l'avenir — étant étonnemment revenu des poètes du passé. Sa poésie construit l'histoire. Elle ne la rumine pas... L'artisan est robuste. J'ajouterai, adulte, en dépit de ses véhémences et de ses fantaisies. Il n'appartient pas du tout à la race des poètes qui vieillissent autour de leur enfance, ou du sens qu'ils en ont. Tcharentz se refait au jour le jour. De là, une surprenante variété de styles. Tour à tour, il brosse de larges fresques à touches rudes et hardies, laisse jaillir un lyrisme en rocaille, bouscule la langue et la métrique ou se plaît à de libres narrations familières, pleines de bonhomie, au ras du sol. Il excelle à rendre « épiques » les objets les plus prosaïques, et se plaît à crever le faux sublime par les prosaïsmes. Il jongle avec l'hyperbole ou se plaît aux sentences concises et abruptes. Mais sans naïveté, ni ces « rêveries » qu'il déteste, même et surtout lorsqu'il prophétise.

Il va sans dire que les fragments trop brefs que nous donnons ne peuvent représenter tous les aspects de son œuvre, mais peut-être les résument-ils assez bien — surtout ses « Rubbaïyat » qu'il écrivit dans les dernières années de sa vie, dont la substance est d'autant plus riche et pathétique qu'elle est retenue, concentrée et comme sous-tendue de litotes et de silences. Il y fait le bilan de ses expériences, sur un ton sentencieux, à l'emporte-pièce, narquois, tendre ou amer, d'autant plus saisissant qu'il semble ravaler je ne sais quel désir inassouvi, que nulle doctrine ne console, encore qu'elle le masque délibérément.

Son matérialisme y paraît être le fruit d'un examen métaphysique — lequel n'aurait eu d'autre solution que son échec ou la connaissance de sa vanité. On le voit bien dans le fait que Tcharentz pique droit sur l'affirmation la plus troublante qui soit sortie de têtes humaines : celle du non-être de l'univers et de sa non-solution tant que son existence n'est pas réalisée comme étant non-être. Tcharentz ne peut admettre cette tentative de dé-création. L'homme est pour lui une conjonction de phénomènes assumant un devenir à l'intérieur d'un univers. C'est ce devenir dont les modalités importent. Son acceptation et non pas son refus. Le poète ne consent pas à postuler que tout dérive d'un « Esprit immobile en essence » puisque le postulat lui-même implique, pour être formulé, des substances en mouvement. A quoi bon rêver sur un contraire que son contraire contient seul ? « Et la forêt où tout se consume et finit est pourtant inépuisable ». C'est une « inconnue » que l'on doit accepter, une organisation présentant une pluralité inconcevable de possibles qu'il faut, lentement, apprendre à discerner et à parfaire. Enfin et surtout, une terre à aimer, car elle est le jardin de l'homme. Tcharentz garde l'espoir qu'elle devienne belle et bonne. C'est rejoindre, à l'extrême, le messianisme judaïque, lequel doit se réaliser ici. L'imagination du poète exige de ne point se satisfaire de l'imaginaire. Car rien d'autre ne peut boucher les failles que la « réalité ». Il s'efforce, héroïquement, de se tenir nu devant les énigmes soulevées par le monde, nu devant ses propres interrogations. Il tentera de ne plus se servir de béquilles ou de systèmes, de tout ce qui n'est pas science véritable, mais palliatifs illusoires. Et, s'il reste une consolation autre que « cet ensemencement du sacrifice et de la mort », ce ne peut être encore que le poème. Celui qui approche le plus de Nature. Par quoi j'appréhende un « meilleur » d'autant plus désiré qu'il semble fuir sans cesse.

. . . . . . . . . .

De tous les poètes arméniens qui eurent pour souci la défense et illustration de la terre natale, Tcharentz, (pseudonyme qui signifie « le Mauvais »), fut sans doute celui qui se refusa le mieux à se faire illusion. Il ne croyait pas à la divinité des mythes. Aussi bien entendit-il, dès le départ, se réserver les parts ingrates de la poésie, celles dont on ne veut pas : charpies de beauté, scandales d'un nonconformisme où se puisent des fraîcheurs plus vraies, constats désabusés après des engagements fervents et féroces ; comportements qui le conduisent à modifier sans cesse son langage et à le tenir, ardemment, au point le plus risqué. De là cette brutalité des contrastes : en passe du poème-fleuve au poème gnomique, de la complainte populaire à l'ode savante. Mais en toutes choses se manifeste cette opposition que son nom même souligne et qui percute aussi bien les bastions politiques ou religieux, que les normes (toujours douteuses) d'une saine psychologie.

Il ne s'en tiendra pas aux exclusives nationalistes touchant sa patrie, encore qu'il soit très attaché, et avec une déchirante tendresse, au charme du sol natal ; très tôt il arrachera en lui cette borne des frontières, qui ne cesse de fomenter des désastres, pour adhérer aux idées de Marx et de Lénine, et participer à la grande aventure. De même son œuvre sera-t-elle toute marquée du besoin d'émancipation verbale. Elle fusait de toutes parts en Europe, encore que les motifs en fussent souvent contradictoires. Mais, à qui eût suivi de près l'aventure de Tcharentz, il eût été aisé de pressentir que le même mouvement qui le poussait à violenter les interdits détestables — et de tous ordres — le conduirait à se victimer lui-même et à se voir condamner par des dirigeants qu'offusquait une pureté semblable.

Il n'est pas étonnant que l'obsession de Tcharentz soit le feu. Je ne sais combien de fois il à celui-ci fit appel et le nomma. L'étrange est qu'il n'en redoute pas l'efficace. Il le réclame, il y croit Se brûler et que tout brûle, tel est le salut. Dite de go, la chose semble absurde ou maladive (et il est vrai que la maladie est en Tcharentz : ce fut effectivement un homme qui se droguait et il est évident que l'obsession du feu fut excitée par la drogue même...) Mais l'important chez lui est l'usage de l'accident, et ce serait escamoter sa réelle grandeur que de ne pas vouloir constater ce que cette obsession, par exemple, alimente et recouvre. Passant outre aux vues de clinique, on voit se soulever un autre visage, celui d'un homme qui plus qu'aucun autre crut au fait de l'esprit et qui fut astreint à constater qu'il était essentiellement celui qu'on refuse. Sauvagerie toute de conséquence. Par là se justifie son nom de Mauvais. Si tous croient un diamant détestable et dangereux quel nom donnera-t-on à qui le tient pour essentiel ? Et si l'objet même d'une liberté plus réelle se voit banni, que dira-t-on de celui qui s'en fit le servant, Voilà découverte cette racine de l'incendie heureux, de cette passion où l'illusoire ne peut brûler que lui-même. Il est très saisissant de voir la drogue en Tcharentz accroître la lucidité tant sa vie est tenue par le besoin des mutations justes. Et d'abord en gommant ses façons d'être successives. Nulle ne tient et toutes sont vraies. De là que Tcharentz ne redoute pas l'artifice. Il le dévore et le purge.

De tous les grands poètes arméniens, et il y en eut beaucoup, peut-être est-il le plus intelligent, et, par son art même d'endosser les chaînes, le plus délivré. L'homme, assurément est extraordinaire, et l'on va loin à marcher à son pas. Je ne sais si le personnage, comme on l'a dit, fut plus grand que son œuvre. La chose ne me semble pas vraie. Ce qui voile aux yeux de certains cette présence aiguë de l'esprit serait sa vertu première ; le dédain de tout intellectualisme habile à donner le change et qui est une des calamités des littératures de décadence.

. . . . . . . . . .

Sa vie ne se joua pas en chambre close. Certes. Peu de poètes unirent autant l'art de l'écriture à celui de l'action, et s'imaginer Tcharentz reclus en quelque tour pour mieux y subir les conflits d'une expérience intérieure serait cruellement faux. S'il est sans doute exact qu'il fut un instable, il le fut à la façon des ouragans. En tout violemment exposé et entendant l'être. Rien du chafouin subtil, qui spécule sur des bombes. Ce n'est pas l'homme des méandres, et il n'avait pas le goût des sublimités saugrenues. Son œuvre entière est imprudente. C'est là sa vertu essentielle et ce n'est pas peu. S'il bavarde, il bavarde et s'il crie, il crie. Ce débraillé fait tout son style, et, grâce à lui il fera tout son coup d'état littéraire. Car il en fit un. Il a libéré la poésie arménienne des usages rigoureux de la prosodie. Et je ne sais trop ce qu'en eût dit Varoujean, qui, à l'inverse, excelle à revivifier l'art savant et pour qui un mot est une chose importante. Ce sont les pulsions qui soulèvent la poésie de Tcharentz, comme un orage recouvert de paroles, ce sont elles qui comportent le phénomène verbal conjoint à celui de l'être ; c'est de ce mouvement sans cesse renouvelé du souffle que Tcharentz espère un renouveau. L'objet de poésie est un prétexte. Comme le feu, Tcharentz n'est pas architecte et ne croit pas à la durée. Cela est vrai chez lui à un degré surprenant et j'avoue ne connaître personne qui me donne à ce point l'impression d'être en proie à une métamorphose permanente sans qu'on sache toujours ce qui la nécessite. Si nous insistons sur cette identification surprenante avec le feu c'est qu'effectivement il finit par s'en dégager une sorte de philosophie dont le premier chapitre pourrait s'intituler : « Psychologie de la flamme ». S'ignorer comme sujet. N'exister que pour l'objet où le langage mène sa danse ambiguë... Car pourquoi tant de délires en tant de paroles ? Pour recréer ce phénomène qui naît de deux brandons. Et pouvons-nous nous penser sans que nous oublions d'être ? Une pensée ne peut que caricaturer les ligaments rigoureux de la créature, ceux de son corps, et ses fonctions... Et tout bonheur se devrait d'être plénitude et vacance et non point la conséquence d'une abstraite méditation sur les lois !

Je ne sais trop, à dire vrai, ce que peuvent penser les matérialistes de stricte obédience de ce type de révolutionnaires et du lyrisme qui les soulève. Peu conformes aux règlements sociaux imposés et peu aptes au service, tels devaient paraître les poètes de la révolution d'Octobre à un crâne stalinien. Tcharentz volait vers l'inévitable prison. Aussi bien, comme beaucoup qui prirent les armes était-il animé d'un esprit contraire à celui qui préside au bon fonctionnement des Républiques. On le voit mal installé en quelque ministère. La lutte avait trop de goût, ne serait-ce que de pouvoir tout en attendre. Le constat est plus amer, et la pesée des jours qui suivent plus intolérable. C'est là que pointe le feu et que se renouvelle le besoin des mutations. On ne peut enserrer Tcharentz, et toute tentative de réhabilitation qui n'aurait pour but que de démontrer sa stricte appartenance à la Doctrine est absurde d'avance. Le phénomène Tcharentz se joue bien au delà. Ce ne sera jamais sur terre assez de flammes, comme il le dit lui-même. Son esprit le voue à une permanente opposition. S'il est vrai qu'il fut le père de la jeune génération des écrivains d'Arménie soviétique, il est moins sûr qu'il les eût toujours approuvés. Son emprisonnement et sa mort préservent sa pureté. Mais en conséquence, suscitent-ils tant de modèles ? Il est aisé de parler grandement des grands morts. En fin de compte cepoète libre, et librement communiste, cognant ses mots sur le « cymbale du soleil », moralisateur à la façon des ronces, cet excellent et salutaire Mauvais, devient à sa manière un redoutable exemple de ce que doit être un vrai poète devant les conformismes d'Etat. Banni à jamais des places honorables et à qui les médailles officielles, tardives ou non, déplaisent.

Mais là encore, à brosser de trop loin ce qu'il put être, on s'abuse et la saveur vraie de ce tempérament se brouille. Il n'en voulait pas tant. A le traduire on voit sourdre sa tendresse et tout ce à quoi elle se brûla, et sa largeur d'âme. Elles allaient de soi. Et il n'était pas l'homme d'obscures malices. Sa vie fut simple, en dépit de tout ce qui put la déchirer.

Il était né en 1897, dans la ville de Makou en Arménie Perse ; et il faut noter qu'il garda toute sa vie la nostalgie du pays natal. De son soleil surtout, (ce qui explique aussi sa nostalgie du feu), dont l'absence, plus tard, sembla lui peser. — (On va chercher très loin, parfois, des causes fort simples. Il est évident que les jeunes années passées à Makou laissèrent au poète un éblouissement d'autant plus intense qu'il était celui de la première découverte). Mais sa famille émigra bientôt pour s'en venir à Kars, ville qui se trouvait sous la domination russe. C'est là que Tcharentz, de son vrai nom Soghomonian, (Salomon, — ce qui explique l'antithèse du pseudonyme), fit ses études primaires et secondaires. En 1915, à dix-huit ans, il

s'engage avec maints de ses camarades comme volontaire dans les troupes de choc que levait la Russie pour aller combattre les Turcs. Les massacres avaient soulevé en tout Arménien un immense besoin de revendication et de justice. Tcharentz prend donc les armes et pousse jusqu'au lac de Van. Les affreux carnages qu'il vit et qu'il dépeint dans *l'aurore épique* n'ont rien de littéraire. En 18, c'est la proclamation de l'éphémère République Arménienne Libre, qui parut, un temps, consoler de six siècles d'occupations persane, turque et russe. Tcharentz se trouve alors à Erévan. Nigol Aghbalian, Ministre de l'Education Nationale, révèle au grand public, par un article éclatant, les dons du poète. Celui-ci devient secrétaire du Ministre, place tout honorifique, qui lui laisse le temps d'écrire comme il l'entend. Mais la République disparaît dès sa deuxième année d'existence. Les Turcs reprennnent les anciens territoires, et Tcharentz, considérant que sa culture est insuffisante décide de partir pour Moscou. En 1920, il adhère au parti de Lénine. Il devient un de ses plus fidèles compagnons. Il avait emporté dans ses bagages deux livres de poème : *l'aurore épique* et la *légende dantesque*. Bientôt, modifiant son style, il va publier *Les foules en délire*. C'est le plus recailleux de ses ouvrages. (A tout dire, l'unanimisme était alors à la mode en Europe, en conséquence des guerres ; et il était fatal qu'un poète aussi engagé aidât de toute sa fougue ce mouvement qui voulait avant tout retrouver « le sens de l'humain »). Le choc de Tcharentz sur la jeunesse fut très vif. Il devint chef d'école. Avec lui s'ouvrait une nouvelle littérature, celle de l'Arménie Soviétique, la seule qui resta du démembrement de la République. (Et, certes, il y aurait beaucoup à dire...) L'influence de Tcharentz sur les jeunes écrivains persista jusqu'en 1935. Beaucoup d'entr'eux ont raconté ce que fut l'homme et ce qu'il leur apporta. Il était revenu à Erévan. Et c'est là qu'il fut emprisonné sur ordre du Parti Communiste Arménien.

On ne sait trop quand il prit goût à la drogue. Il ne semble pas, en effet, que le succès, ou les combats politiques, aient pu apaiser les frustrations dont il souffrait. Son instabilité conjointe à son génie, je l'ai dit, brûlait plus loin, et l'on peut douter que ceux qui l'approchèrent l'aient réellement connu, et aient compris la singularité de ce qui le dévorait. (Plus on avance dans la découverte d'un être, plus on voit se troubler l'« histoire » et s'amenuiser nos certitudes. Le vrai exigerait un don d'ubiquité). En prison, privé de drogue, sa vie devînt un supplice. Ses voisins de géôle racontèrent qu'ils l'entendaient hurler. Un matin, on le trouva mort près d'un pilier de ciment. Il s'y était brisé le crâne. C'était en 1937. Il laissait deux filles, qui vivent encore. Après la mort de Staline il fut réhabilité. (Le mot a je ne sais quoi de grotesque...) On réédita son œuvre. Outre les ouvrages cités, elle comportait *Ballades et Poèmes*, *Le Livre de route*, des poèmes divers et des quatrains non réunis en receuil, et deux écrits de prose, *La terre de Naïri*, qui est un roman, et des *Souvenirs de la maison de correction d'Erévan*.

On découvre peu à peu de nombreux inédits éparpillés dans diverses familles. Depuis que Mikoyan vînt proclamer à Erévan la grandeur du poète et fit la levée d'écrous de son œuvre la renommée de Tcharentz ne cesse de se répandre et de croître. On le traduit. Et le voici, de nouveau, un des maîtres de la jeune école.

Ce n'est pas, en ce qui me concerne, l'aspect politique de l'œuvre de Tcharentz qui me touche. Je n'y crois guère, ou, plus exactement, je vois trop, à la lumière des événements qui se déroulent, combien l'authenticité de tels engagements l'emporte en qualité sur l'inévitable ragoût de l'ordinaire. Mais encore n'est-ce pas à cette différence criarde qu'il faut, à mon sens, constater la grandeur de Tcharentz, mais bien au niveau de sa sagesse et j'oserai dire de son prophétisme natif. Cet homme trapu, laid, dit-on, est d'une trempe peu commune. Il casse le sens, d'abord, que l'Arménie se fit, à tort ou à raison, d'un poète. Ce n'est pas en vain que les frontières sautent en lui, qui fut pourtant le plus rivé des hommes au lieu natal, ni par assaut de démesure. Mais surtout parce qu'il veut modifier les références essentielles entre l'homme et lui, entre l'homme et l'univers. N'est-ce pas là ce qui angoisse tout véritable poète et se peut-il que l'un d'entr-eux puisse respirer, sans s'interroger sur la valeur de la face des dieux ? C'est dans cette quête que Tcharentz découvre sa race. On dit qu'il fut une sorte de mage du matérialisme, et c'est vrai. Son ambition secrète ne fut pas autre chose, peut-être, que de retrouver un art de vivre nouveau et, partant, une pensée nouvelle dont il lui parut que toute poésie, fatiguée de ses vieux pouvoirs était avide. Paradoxalement, et par simple conséquence, ce qui me frappe en lui c'est la présence des anciens — ceux qui pensaient le monde en même temps qu'ils en vivaient la musique. Omar Khayam ou quelque nouvel Héraclite, mais sans rigueur et comme par gourmandise. Un poète philosophe tout effréné de vivre et pour qui tout est toujours trop peu.

Toute politique sera toujours dépassée par le poète. Ce que Tcharentz a concédé, comme tant d'autres, à l'action sociale, c'est une occasion de lyrisme, et l'expérience qui la soutient. Mais il va sans dire que le poète préservait d'instinct ses risques de débordement. Amours, boissons, drogues proposaient d'autres duretés et d'autres disciplines. Ce sont la des diables rigoureux. De là cette générosité inlassable vis-à-vis d'autrui, qui compense cette stricte mise à sac et à cendre de lui-même. Est-il rien de plus ascétique que ce qu'on dit être un vice ? Et qui réclame plus d'affreuses vertus, et je dis affreuses dans le sens d'une surenchère d'exigences morales. On s'abuse étrangement quand on pense qu'un vice est chose qui se laisser aller. Voyez nos banquiers ! Est-il rien qui exige plus de sacrifices, d'assumations redoutables, de longs calculs, de préméditations complexes, de stratégies difficiles de soi à soi, de repentirs et de supputations infinis ? Est-il rien, somme toute qui exige de consommer autant d'intelligence ? Et pour peu que l'usage d'une passion soit tout alimentée des nécessités de l'esprit et de ses besoins de logique, et d'une logique qui veuille se vivre et non point tant se rêver, quel accroissement du génie et quelles découvertes ! N'est-il pas grands que la drogue ou l'alcool aient guéri Tcharentz des ambitions de César, cachées sous toute peau humaine, qu'elles se soient faites préférer aux honneurs ordinaires de quelque Académie où des gens confectionnent l eur sens de l'humain « exemplaire » ? Imagine-t-on Tcha rentz semblable à ses laudateurs officiels qui, excusant ses erreurs, se dilatent niaisement sur leur géniale contrepartie ?

Autre chose me touche. Le débridé mystérieux de son art, et sa science volontairement voilée. Il ne faut pas s'y tromper, Tcharentz avait couru beaucoup de routes. On le voit bien à lire les circonvolutions de ses styles. Chacun exige une remise en question. Chacun constitue un acte de désobéissance salutaire. Il n'inventorie pas, avec ferveur, comme Varoujean, les grandes rhétoriques et ne s'interroge pas sur leur bien-fondé.

Dès le départ, Tcharentz opte pour un style net, simple, privé d'images, ne redoutant pas le prosaïsme s'il dit bien la chose. Chez Varoujean, homme qui connut la contrainte, la vie couve sous le langage ; elle le modèle, l'excite et ne peut filtrer qu'à travers lui. De là le soin apporté aux mots porteurs de vie. En Tcharentz éclate le phénomène inverse ; la vie et ses événements ont débordé les mots. Dès lors, un souci de littérature pure n'est plus utile ni même concevable, il détruirait l'afflux des réalités extérieures. C'est comme par jeu que Tcharentz se voit artiste. On ne peut se cacher, du reste, que son appartenance originelle rattachait ses passions, quelles qu'elles fussent, à l'Orient natal. Qui cachait-il, au fond, sinon l'ombre de ce vieux pacha des légendes, traînant son harem de délectations tout autant que le sabre ? Il n'a pas caché dans ses poèmes son goût pour la poésie persane. Il lui emprunte des formes savantes pour y couler une substance très simple. Mais il flairait en cette Perse plus une chance et comme un besoin d'incarnation heureuse, qu'un excès de raffinement verbal. Ses premiers receuils montrent à travers quelques influences inévitables, (celles des poètes musulmans et celles de ses grands précédesseurs arméniens), ce libre jeu qui se satisfait moins à écrire qu'à vivre. C'est un fait que Tcharentz est sans cesse au delà de sa plume, et que lui, qui écrivit beaucoup, ne fut pas lié par l'écritoire. C'est important pour une vie d'homme et je ne doute pas que les revendications qu'il exposait aux jeunes gens, à Moscou ou à Erévan n'eussent beaucoup de poids. L'expérience avait longtemps frotté les mots, et ce n'est pas en vain que le poète en appelait aux libérations vraies des formes et des usages de son art. Toute sa vie avait été escortée d'excercices. Il connaissait les raisons de l'infidélité ou des désordres apparents. Savant de toutes ses cicatrices... il suffit d'écrire sur lui pour mesurer les repentirs, les dérobades, les élancements de sa vie, et combien il est difficile d'en parler sans trop de sottises...

Je ne cache pas que j'aime me pencher sur une telle nature et sur quelques autres, issues d'Arménie. Aussi bien, encourant volontiers des critiques, je dirai que j'ai aimé à ce qu'elles escortent mes années. Elles m'ont beaucoup appris et je les trouve grandes. Bien plus, je l'avoue, que celles de maints autres, plus célèbres. Je n'ambionnai rien de plus que d'attirer un peu d'attention, et selon mes moyens, qui sont courts, sur leur originalité. Elle débouchait sur des sacrifices effroyables. Il me semblait que la ferveur dont on entoure d'authentiques poètes se faisait rare, et qu'il y avait, pour un d'entr'eux, comme une nécessité toute sainte à tendre naïvement la main vers des œuvres qui furent payées d'un si grand prix. Ce qui fut une découverte exotique, et le fruit d'un voyage imaginaire, devint peu à peu, une constance, sans même que fut fait un effort, tant surabondait le plaisir, et la tendresse. En vingt-huit ans d'échanges semblables on acquiert des habitudes et je ne dis pas qu'elles soient toujours bonnes. Mais quoi... encore que je ne sois spécialisé en rien, l'aventure des grands vivants d'Arménie m'est familière et le lecteur serait bien surpris si je lui découvrais tout ce qu'elle m'apporta de très doux... La récompense passa de loin ce qui pourtant n'exigeait aucune promesse... Ainsi Tcharentz, qui ne crut pas à la sagesse de Salomon, succède-t-il à Varoujean qui porta toute sa vie un conflit qui se voulait amoureux de sagesse, celle du sel, il est vrai. Et tout cela baigné en eux de jeunesse ; tout cela vécu au plus vif de soi... Au point que je ne crois plus au royaume des Ombres, même en rêve, tant celle-ci, comme on les nomma, et si mal, me firent leçon de réalité et de la plus tangible.

Nous énumérions, Poladian et moi, toutes les raisons de notre ferveur. Mais en est il une seule qui vaille le simple enchantement, alors qu'il s'éleva de vies aussi terribles ?.. au point que je ne sais plus conclure et ne veux pour rien au monde...

**Tcharentz est avec Maïakovsky le plus grand poète de la révolution russe. Ce qui est bien dans les traditions de l'Arménie: elle hait le médiocre et se veut aux premiers rangs. Après avoir donné à Byzance quelques-uns de ses plus grands empereurs, elle se devait bien de fournir à Moscou certaines de ses plus fortes têtes.**

(Շար. Ա. էջէն)

չեւ հիմա եւ որուն ծնունդ տուաւ անշուշտ նոր բանաստեղծին արարչական ձեռքը:

Նոր բանաստեղծները բարդ մեքենայի մը կնճռոտ եւ առեղծուածային մեքենավարներն են: Իմացականութիւնը հասած է կէտի մը, ուրկէ անդին զգլխիչ անէութիւնն է, ժամանակէն ու միջոցէն դուրս:

«Մանրամասնօրէն նկարագրելէ, իր բոլոր դրսերեւոյթներուն մէջ տալէ ետք արտաքին աշխարհը, այժմ բանաստեղծութիւնը հետազօտութեան նոր դաշտեր կը փնտռէ, սուզուելով մարդկային էութեան գաղտնածածուկ խորութիւններուն մէջ»:

— Հիմա խօսքը քուկդ է, սիրելի Յարութ, ի՞նչ է բանաստեղծութիւնը քեզի համար, այսօր: Ի՞նչ ունիս աւելցնելիք Ահարոնի եւ քու ըսածներուդ վրայ: Քեզմէ յետոյ խօսքը պիտի տամ Զուլալին:

Յարութ երկար պահ մը կը խոկայ, գլուխը հակած կուրծքին: Ապա, հատիկ հատիկ, կանգ առնելով իւրաքանչիւր բառի վրայ.

— Շատ բաներ...: Անսպառ նիւթ է, կարելի է օրերով խօսիլ, խորհրդածել, խոկալ: Ինչպէս բոլոր միւս արուեստներուն մէջ, երաժշտութիւն, նկարչութիւն, բանաստեղծութեան մէջ ալ կայ մաս մը, կը հասնինք տեղ մը որ դժուար բացատրելի է: Ահարոնն ալ, ես ալ, եւ բազմաթիւ ուրիշներ, շատեր, մեզմէ շատ աւելի մեծեր, շատ աւելի գեղեցիկ վերլուծումներով ջանացած են պատասխանել հարցումիդ — Ի՞նչ է բանաստեղծութիւնը:

Բացատրութիւն մը տամ, որ համեմատաբար նոր է. բացատրութիւն, զոր գտած եմ Ռօլան Տը Ռընէվիլի մէկ գիրքին մէջ: Հաւանաբար ինքն ալ առած է ուրիշէ մը. ուրկէ՞, ո՞ր տեղէն, չեմ գիտեր:

Ենթագիտակցութիւնը կայ ամէն մարդու մէջ: Շրջանակ մը գծենք, որուն ամբողջ մակերեսը սեւ է: Ճիշդ կեդրոնին ճերմակ կէտ մը: Այս ճերմակ կէտը ամէն անհատի արտաքին գիտակցութիւնն է: Հետեւելիք երկու ընթացք կայ, արեւելեան եւ արեւմտեան: Առաջինին մէջ անհատը, կեդրոնի այդ ճերմակ կէտը ուրեմըն, կը զոհաբերէ իր Եսը այն ամբողջութեան, որ կը գտնուի իր շուրջը, կ'ընդելուզուի, կը միանայ այդ շրջանակի մակերեսի սեւին: Ուրիշ ձեւով մը ըսենք՝ կը մերժէ գիտակցութիւնը, եւ կը միանայ բանի մը որ տիեզերքն է: Ուրիշ խօսքով կը ջնջէ իր Եսը, հասնելու եւ միանալու համար ընդհանուր ենթագիտակցութեան, համամարդկայինին:

Ընդհանուր բառով մը կ'որակենք այս ընթացքը՝ արեւելեան միսթիսիզմ: Արեւմտեանը կը հետեւի ուրիշ ընթացքի մը: Միշտ նոյն սեւ շրջանակն է եւ կեդրոնի նոյն ճերմակ կէտը: Այս վերջինը փոխանակ միանալու շուրջի սեւ մակերեսին, հետզհետէ կը ջանայ ընդլայնել իր արտաքին գիտակցութիւնը, նօսրացնել իր շուրջի սեւը: Այս վերջինը հետըզհետէ տեղի կուտայ կեդրոնէն տարածուող

ԲԱՆԱՍՏԵՂԾԱԿԱՆ ԳԻՐՔԵՐՈՒ ՀԵՏ

Գրեց՝ **Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ**

# ԳԱՐՆԱՆԱՑԱՆ

*Ջահակիրներ խորագրուած շահեկան դիմաստուերներով, 1973, Տոքթ. Եդուարդ Սիմքէշեան բարախուն գրչով մը լուսարձակի տակ դրած էր «կեանքին վէպը» Արեւմտահայ միտքին եւ հոգիին ծաղկումին սատարած 16 ջահակիրներու: Անոնք կը կոչուէին Հ. Ղեւոնդ Ալիշան, Ա. Զօպանեան, Մ. Պէշիկթաշլեան, Պ. Դուրեան, Զապէլ Ասատուր, Եղիշէ Արք. Դուրեան, Թլկատինցի եւ հոյլ մը այլ աստղանիշ անուններ:*

*Ինչո՞ւ այս անդրադարձը բանաստեղծական գրքոյկի մը առիթով, որ լոյս տեսած է հեղինակին ստորագրութեամբ Պոլիս, 1977ին,* Գարնանացան *ընդհանուր խորագիրով:*

*Աղերսը անցեալին հետ, ըլլայ դեղապաշտ խառնուածքով, ըլլայ հոգեխառնութեամբ եւ քերթուածի արտաքին կառոյցով առաւել քան ակնառու է: Յաճախ չարունակականութեան մը դրոշմը կը ստանայ ալեզարդ վաստակաւոր մտաւորականին, գրչի մշակին բանաստեղծական տողերուն մէջ: Բաղդատութեան չեն մտիր այս հպանցումները: Ոչ ալ կրկնօրինակի վկայութեան: Հանդիտութիւնը առաւելաբար խառնուածքի արդիւնք է: Մ. Պէշիկթաշլեան, օրինակ, առնուազն դարով մը կ'անջատուի ներկայ օրերէն, բայց անոր լեռներէն, բարձունքներէն, երազած բնաշխարհէն յուշիկ ծաւալող հովը՝ ջերմ ու սրտայոյզ, կը յուշէ ներքին աշխարհը Եդ. Սիմքէշեանի:*

*Բնութիւնը իբրեւ ծառ ու տունկ, գետ ու վտակ, կամ այլ մանրամասնութիւն մարմնական ծարաւ տենչի մը ակնաղբիւր կը դառնայ: Նոյնացում մը, միախառնում մը, ընդելուզում մը տեղերքին հետ ակնյայտնի կ'ըլլայ բանաստեղծին պարագային: Ընդհանրապէս մանկունակ, ըսենք անապակ հոգիով է որ կը դիտէ զայն՝ տեղերքը, զանոնք՝ բնութեան ստորոգելիները: Պահերը, յիշատակները, ապրումները կամ ստուերագծուող դէմք մը միշտ պարուրուած կը մնան բնութեան շրջապատին հետ: Երազները կը թաւալին մինչեւ գիւղ՝ ստեղծելով գիւղանկարներ:*

*Այսպէս է, որ կը տարածուի լար մը, որ երազային է անպայման, ըղձանքներու արդիւնք է անկասկած:*

*Կեանքի վերջալոյսին հետքերը նշմարող միտքի եւ սրտի երա՞զ՝ անցած տրտմանոյշ պատանեկական, երիտասարդական օրերու, թէ ցայգերգ մը, միշտ խանդավառ որդատունկի մը ծիլով: Կեանքին յաւերժութեամբ: Թերեւս երկուքը միասնաբար: Որովհետեւ տրտմութիւն մը կայ հինէն եկող, գրչի առաջին հպումներէն: Տրտմութիւն մը, որ սակայն հազիւ հազ իր դիմագիծը կը ստուերագծէ: Եղանակները հեշտալի են, առանց բռնազբօսիկ մեղկութեան:*

*Հոս, մեր առջեւ, կեանքին չոր ու տափակ, այլամերժ ու տարանջատ միջավայրէն խոյս տուող եւ բանաստեղծութեան ընձեռած հոգեկան խաղաղութեան ապաւինող էութիւնն է, որ կը նշմարենք: Տեսակ մը նաւաբեկութենէ դէպի ուրուագծուող ափ լողացող էակը:*

*Իմացական անձկութիւններ անշուշտ որ կան, բայց ոչ դարը իր ափին մէջ առնող, դրոշմող եւ հրապարակ հանող կիրքով, տենդով ու դատումով: Կը տարուինք հաստատելու առաւել ապրումը յուզումներու, տուայտանքներու, անդարձ օրերու, ապրուած ու երազուած պահերու:*

*Մօտաւորապէս հարիւր էջերու վրայ տարածուող եւ տարիներու հոլովոյթը արձանագրող իր բանաստեղծական աշխարհը որակած է* սրտի ժամեր*: Այդ տրոփները՝ միախառնուած հպանցիկ մտասեւեռումին, ներկայացուած են պատկերաւոր տողերով, այլազան գոյներով, որոնք կը մնան կախարդական, եթէ նոյնիսկ չեն դառնար տիրական:*

*Արդեօ՞ք անոր համար, որ զգայնութեան թելը մեր մէջ տարտամ վիճակ է ստացած: Կորսնցուցած է իր երբեմնի կշիռը:*

*Յամենայն դէպս, Տոքթ. Եդուարդ Սիմքէշեանի սրտին ալեկոծումը, թէկուզ մեղմիկ, խռովք մը կ'առթէ մեր մէջ: Մանաւանդ իր լեզուական պերճ ու հարուստ ատաղձով: Բիւրեղ ոճով:*

ԳԱՐՆԱՆԱՑԱՆ, Եդ. Սիմքէշեան, Պոլիս 1977

---

ՄԵՏԱԼԻՆ ՄԻՒՍ ԿՈՂՄԸ
ԱՐԴԻԱԿԱՆ ՆԿԱՐՉՈՒԹԵԱՆ

(Շար. Ա. էջէն)

*ւեստի գործ մը վաւերաթուղթէ մը աւելին է: Ինչպէս որ պատկերային գործ մը չի կրնար արտաքին աշխարհին առարկայական եւ սորկամիտ վերարտադրութիւնը ըլլալ, նմանապէս վերացական նկար մը չի կրնար պարզօրէն եւ «հում» կերպով մեր ներաշխարհը արտացոլացնել: Արուեստի գործ մը ինքն իր մէջ կը պարունակէ արժէքներ մեր «տեսիլք»ներէն անկախ: Եւ դեռ՝ ան «պատահմունք»ի մը կամ ներշնչեալ պահու մը գործ չէ: Գոնէ ասոնց արգասիքը չէ միայն: Ամբողջական գործի մը մէջ կրնան մտնել, անշուշտ, նպաստաւոր, ներշնչեալ վայրկեաններ՝ որոնք, սակայն, կը պտղաւորուին եւ մարմին կը ստանան աշխատանքով, յստակատեսութեամբ, գիտութեամբ, բայց երբեք պղտոր անորոշութեամբ: Մեր հարազատ, ներքին խոր կեանքը ցոլացնելու համար առաջարկուած «ինքնագործ», «մեքենական ժայթքերը» ոչինչով կը պաշտպանուին: Մեր «մթին» կողմերը շատ աւելի հարազատութեամբ երեւան կը հանենք անոնց մասին մտածելով, զանոնք խորաչափելով, զննելով քան թէ՝ անգիտակից զառանցանքի նման արտաբերելով: Արուեստը դէմ չէ կարգաւորումի մը, ընդհակառակն:*

*Օրինակը կուգայ վերէն, անոնցմէ՝ որոնց անունով տեղի կ'ունենան մերօրեայ անհակակշռելի արուեստի պառթկումները: Արդի նկարչութեան հսկաները երբեք չեն խզած իրենց կապերը դասական նկարչութեան հետ:* Մաթիս *մը շատ մը հանդիտութիւններ ունի պարսկական մանրանկարչութեան հետ:* Ֆերնան Լէժէ՝ Սիմապիւէին (1) *հետ:* Ռուօ *մը կամ* Մանէսիէ *մը՝ միջնադարեան ապակենկարներու վարպետներուն հետ,* Փիքասօ՝ *բոլորին հետ, չմոռնալով ափրիկեան եւ Ովկիանիոյ արուեստները: Քանդակագործ* Պրանքիւզիի *ետին կ'ուրուագծուի* Լէսփիւկը (2)*: Յաճախ կը պատահի, ասոնց պարագային, հակառակ ուղղութեամբ արժեւորում մը: Արդի մեծ արուեստագէտներու շնորհիւ է որ հինը կը վերարծարծուի եւ կը վերարժեւորուի, ան ըլլայ ծայրագոյն արեւելեան թէ սեւամորթներու արուեստ:*

*Բարեբախտաբար, արուեստի պատմութիւնը ցոյց կուտայ թէ ամէն ժամանակ քիչ եղած է թիւը ընտրեալներու: Այսօր, պատկերասրահներու եւ թանգարաններու մէջ գտնուող դասական գլուխ-գործոցները սակաւաթիւ վերապրողներն են նկարչական այն անչափելի շեղջակոյտին, որ գոյութիւն ունէր իրենց շրջանին որպէս «արուեստի գործ»: Արդի նկարչութիւնը, իր գլխաւոր իրագործումներով – ուր միտք, հոգի եւ արուեստագիտութիւն հաւասարապէս առկայ են – յաջողած է նոր ձեւերով արտայայտել նոր օրերու մարդկային տագնապները եւ հայեացքները, ազատագրելով արուեստը իր կաշկանդիչ կարգ մը հաստ շրջանակներէն:*

*ԳՐ. ՔԻՕՍԷԵԱՆ*

Պէյրութ

(1) Իտալացի ճարտարապետ նկարիչ (1240 – 1302): Անուանի դարձաւ գլխաւորաբար իր որմնանկարներով:

(2) Նախապատմական վայր Եւրոպայի մէջ, ուր մեր թուականէն շուրջ երկու հազար տարիներ առաջ ստեղծագործուած արձանիկ մը ցոյց կուտայ թէ հնաքարային արուեստը խորհրդանշական եւ արտայայտչական ի՛նչ ներդաշնակութեամբ յաջողած է արտայայտել կնոջական մարմինը:

Imprimé sur les presses du Journal «Haratch» 83, rue d'Hauteville 75010 Paris
Commission paritaire : N° 55935

# ISTANBUL

Je retourne parfois dans ma ville natale et je marche le long de ses sept collines, sous le ciel intime. L'Almanach de l'Hôpital National (1) prévoit « Vents et pluies », ou « Tempête de neige », mais son avertissement n'est pas entendu. Le mystère qui plane sur la ville à perte de vue donne l'impression que la population va se manifester d'un instant à l'autre en sortant de la féérie des siècles légendaires. Mais personne ne se manifeste. Tout est présent, tout est visible, et pourtant hermétiquement clos. Nos ponts intérieurs sont tels que je les ai laissés l'année de la panique, mais le temps ne s'écoule plus d'une rive à l'autre(2), le temps, c'est moi-même qui marche, sans avancer. Je sais où est notre maison, notre église, notre collège, mais je reste face à la mosquée comme un créancier obstiné. Je reste face au minaret, qui devrait être plus beau que le pin élancé, si sa racine n'était empoisonnée. Elle rend bouche-bée, la stupeur qui interdit toute interpellation désormais tardive, toute protestation ou cri qui resteraient sans écho. Ils sont là, les faux témoins du ciel, le Croissant et l'Etoile, ceux qui ont condamné notre chère île arménienne.

Je suis sur le Bab Ali Caddessi (3), lorsque je sens qu'à mes côtés marche mon frère, que je repousse sans explication, sachant que je n'ai pas de frère.

Sublime Porte, Sublime porte, pourrais-je oublier la Sublime Porte, trompeuse, qui est partout et nulle part. La Vierge deKez Koulessi (4) reste emprisonnée dans sa légende bleue, tandis que je continue mes promenades sans but, de Yemis Isguelessi à St. Jacques (5) et de Chabzadé Baçesi à Aynale Cesme, suivant la pente des rues divisées et des quais glissants. Devant chaque source je me souviens de la soif qui était mienne, devant chaque source je me souviens de la solitude qui fut mienne.

Disparues les aurores vivantes de Constantinople, disparus les merveilleux crépuscules dont les multiples voiles élevaient la ville vers le ciel. Ma promenade est aussi irréelle, le long de la Corne d'or où la corruption légale a amassé des cuirassés rouillés, aux noms prestigieux. Sur la rive d'en face (6), il reste le turban enragé des Sultans Fatih, Sultan Ahmed et Sultan Bajazet. Une fois encore paraît mon frère qui transpire en haletant, mon frère que j'avais repoussé jusqu'à Tchakmakdjelar et Chichli (7). Je le regarde, mais lui ne me regarde pas. Il a pointé l'index vers le sommet de Galata Koulessi, où flotte un drapeau rouge , signe de carnage et d'incendie. Les flammes crépitent, fument, gémissent, deviennent un dévorant brasier : elles ensanglantent la neige et les trois mers d'où jaillit le dieu païen qui, à travers la mâchoire des tonnerres, met en branle les quatre vents du ciel. Le sang menace de m'entraîner dans le roulement de crimes imaginaires, qui ne se différencient pas des crimes réels. Je me prépare à fuir, mais à peine ai-je tourné le dos à la menace, que je me retrouve face à une chemise blanche suspendue dans l'air, une chemise tout à fait vide, dont les bras sont enchaînés. Je me penche pour soulever la chaise maudite qui a roulé au fond, je me penche, je me penche, je me penche, tentant de garder l'équilibre. Le garder pour le redressement de demain, quand je vivrai comme avant, mais complétement transformé, connu-inconnu à moi même.

CHAHAN CHAHNOUR

(1) *L'hôpital national est un centre hospitalier arménien d'Istanbul qui, chaque année, édite un calendrier.*

(2) *D'une rive à l'autre doit être une allusion aux deux rives de la ville : européenne et asiatique.*

(3) *Rue principale à Istanbul.*

(4) *« Tour de Leandre », un petit édifice dans la mer de Marmara, qui a sa légende.*

(5) *Eglise arménienne.*

(6) *Rive asiatique.*

(7) *Quartiers d'Istanbul.*

*N. du T. — Texte original en arménien, paru en 1973 dans « Haratch ».*

*Comme dans la plupart des œuvres de Chahnour les mots, les noms propres sont à double sens et donnent succintement au lecteur initié toute l'histoire d'un peuple déraciné.*

# ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆ

*Գրեց՝* **ԿԱՐԻԿ ՊԱՍՄԱՃԵԱՆ**

ՕՐԱԳԻՐ Ա.

Երեւանի մէջ օրական ճանի մը թռն հաց կը թափուի:
Հաւանեակաց սիկարներ կը փտտին Երեւանի մէջ:
Լեւոն Ներսիսեանը հացի կը նստի
Դիցաբանական աստուածներուն հետ,
Կը հարբեցնէ բոլոր աստուածները
եւ կը հարբի մարդերէն:

Ո՛չ մէկ բան չի կրնար ծածկել դէմքդ,
Քաղա՛ք,
ո՛չ այս երկար տարածութիւնը,
ո՛չ մազ-մօրուքները արուեստագէտներուդ,
ո՛չ ալ տերեւները ոսկի աշունիդ:
Ոչ մէկ բան չի կրնար ծածկել դէմքդ, Քաղաք:

Աղ ու հացկեր մարդոց կարօտ մնացի.
ամէնուդ խմածն անոյշ,
իմը՝ իմ տեղը թափեցէք:

ՕՐԱԳԻՐ Բ.

Մեթրոյէն մինչեւ այս կողմերը փիկալի՝
եռեւէդ կուգամ: Զկարծես թէ կը հետապնդեմ քեզ.
պարզապէս նոյնն են մեր ճանապարհները,
կամ կը թուին ըլլալ:

Բայց մանաւանդ չկարծես թէ արժանի չես
հետապնդուելու ու հալածուելու:
Արդէն ճանի մը տող օրօրած եմ մտքիս մէջ՝
քայլուածքիդ համաչափ: Անհաւասիկ հասայ
իմ տեղը: Եթէ կրնամ օրօրուող Կշռոյթդ
քիչ մըն ալ պահել մտքիս մէջ, անոր
եղանակով տողերս երգի կրնան վերածուիլ:

ՕՐԱԳԻՐ Գ.

Երբ ուժասպառ կ'իյնաս բարձունքներու մէջ,
եւ կ'իյնայ գլուխս կուրծքերուդ վրայ,
կը տրոփէ սիրտդ քունքերուս մէջէն,

շնչառութիւնդ
այտոսկրիս վրայ կը փշրէ
ալիքները ստինքներուդ՝

փշրելով կը տանի թմրածութիւնս,
ու կը հարցնեմ, թէ վերսկսելու
ցանկութիւն ունի՞ս:

Բայց դուն խորունկ կը քնանաս.
եւ աքլորի հետ ու աքլորի նման
պիտի սպասեմ արշալոյսին:

ՕՐԱԳԻՐ Դ.

Քեզմէ ամենեւին չրաժնուելով՝
անվերջ դէպի քեզ վերադարձայ,
աղուորս:
Հեղանիւթիդ մէջ ապրեցայ
ե՛ւ բաժանում ե՛ւ վերադարձ:

Եւ երբ այս գիշեր խոր քունիդ մէջէն
կ'երկարես ձեռքդ եւ ինձ չես գտներ,
հո՛ն եմ, աղուորս, քո՛վդ, աւելի իրական,
աւելի ներկայ, թէկուզ որ հիմա
այլ անկողնի մէջ ուրիշ մարմին
մըն է գրկածս՝ շատո՜նց քուն մտած,
բայց անքնութեամբ լեցուցած է զիս:

Արտօնելով որ ապրիմ
իմ ուզած ձեւով,
դուն ինձ ապրիլ սորվեցուցիր:

ՕՐԱԳԻՐ Ե.

Երբ Ապրիլ 24ին
գործ-բան ձգելով աղօթելու կ'երթաք,
հրաման առէք Ներքին Գործոց նախարարէն՝
ո՛չ թէ Աստուծմէ,
որովհետեւ մեռելները կրնան վրդովիլ:

Աստուծոյ մի՛ դիմէք, ի սէր Աստուծոյ.
Աստուած ծերացած է, խուլ է,
աչքերը լաւ չեն տեսներ, մեղքցէք իրեն,
եւ եթէ անպայման պիտի աղօթէք,
աղօթեցէք իրե՛ն համար, որովհետեւ
մեռելները ձանձրացան խունկէն:

Եւ ապրողները յոգնեցան
խոստում որոնալէ:

Եւ ապրողները շատոնց հրաժարած են
ձեր Մարդկային Իրաւունքէն
եւ անոր պաշտպաններէն:
Ձեզմէ ընդամէնը կը խնդրենք,
որ գոնէ մեր չնչին իրաւունքներուն մէջ
քիչիկ մը մարդԿայնութիւն դնէք...
ընդամէնը այս, ընդամէնը այսքան.
քիչիկ մը մարդկայնութիւն
եւ ուրիշ ոչինչ:

ՕՐԱԳԻՐ Զ.

Քեզմէ շատ հեռու,
այս խուցին մէջ կծկուած,
ափերուս մէջ սեղմած գլխացաւ ու գլուխ,
արդեօք չի՞ քերուիր ծայրը մատներուդ:

Դուն միակն էիր բոլորի մէջ.
միայն քեզի Կը պատկանէր
այն մատները թափանցիկ,
որոնք մազերուն մէջէն այս գլուխին՝
ցաւը կը քաշէին մինչեւ վերջ:
Արդեօք չի՞ քերուիր ծայրը մատներուդ:

Երէկ Ապրիլ 24 էր,
մինչ դուն այսօր ի՛նչ կը փնտռես...

ՕՐԱԳԻՐ Է.

Գիշերներդ կ'անցընես
դրացի բոզերուն պիստակ հրամցնելով,
եւ ցերեկները կը քնանաս
հեռախօսի երկար զանգերուն տակ,
եւ կէսօրները կը հեւաս
աննպատակ վազքի գործիքին վրայ:

Եւ մանանեխով նրբերշիկ
նաշակելէ առաջ՝
անօթի փորին,
քերթողութի՛ւն կը խաղաս:
Ջեղա՛լ, բարեկամ:

ՕՐԱԳԻՐ Ը.

Դուն ծառ էիր,
եւ ես արջի նման
գլխիվեր կը մագլցէի ճիւղերուդ մէջ
եւ կ'իջնէի անվերջ գլխիվայր:

Դուն այլեւս ծառ չես,
իմ ըրածն ալ
ընդամէնը արջի ծառայութիւն էր:

Քեզ լռեցնելը
հեռատեսիլ անջատելու չափ
դիւրին է հիմա: Նախ ձայնդ Կը մարեմ՝
քիչ մը բերան կը շարժես, քիչիկ մը աչք,
եւ յետոյ կը հեռացնեմ պատկերդ:

Հիմա դուն բառ ես անգործածելի.
քեզ կը տեղաւորեմ պատահական բառարանի մէջ
եւ կ'ազատուիմ քեզմէ:
Թող ուրիշը գտնէ զայն ու գործածէ:

Քեզի կը մնայ հեռանալ.
ինծի կը մնայ բուժուիլ
վերջնականապէս բանաստեղծելու ախտէն:

*Փարիզ*, 20–27 Ապրիլ 1978

